1917 № 15—Ապրիլ 23 ԵՐԿՐՈՐԴ ՏԱՐԻ

# ՀԱՄԲԱՒԱԲԵՐ

ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԵՒ ԳՐԱԿԱՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

ԿՈՎԿԱՍԻ ՀԱՅՈՑ ԲԱՐԵԳՈՐԾԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ

10 կոպէկ — Լոյս է տեսնում կիրակի օրերը — 10 կոպէկ

**ԲԱԺԱՆՈՐԴԱԳԻՆԸ** տարեկան 4 ռուբլի, կէս տարուան 3 ռուբլի. Արտասահման, տարեկան 5 ռ., կէս տարուան 3 ռ.

**ԽՄԲԱԳՐՈՒԹԻՒՆԸ՝** Թիֆլիս, Արտասարաղեան հրապար. № 7. Հեռախօս № 29.

Փոստի հասցէն.—Тифлисъ, „Амба[illegible]еръ". Tiflis, Rédaction du journal „Hampavaber".

**ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆՆԵՐ՝** տողին 10 կոպ.

Խմբագրութիւնը բաց է առաւօտեան ժամի 10—2 բացի կիրակի և տօն օրերի
Տպագրուելու ուղարկուած ձեռագրերը կարող են ենթարկուել փոփոխման կրճատման։
Տպագրութեան համար անյարմար ճանաչուած մեծ յօդուածները պահւում են վեց ամիս խմբագրատանը, իսկ փոքրերն անմիջապէս ոչնչացւում։
Տպագրութեան համար անյարմար թղթակցութեանց և յօդուածների առթիւ խմբագրութիւնս պարտաւոր չի համարում գրաւոր բացատրութիւններ տալ։

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ

ԽՄԲԱԳՐԱԿԱՆ.—Պէտք է գիւղը կազմակերպել, Ս. Յարութիւնեանի։ ՀԱՄԱՇԽԱՐՀԱՅԻՆ ՊԱՏԵՐԱԶՄԸ։ ՆԵՐՔԻՆ ՏԵՍՈՒԹԻՒՆ.—Մայիսի մէկը, Պետական-տարրական դպրոցների ազգայնացման խնդիրը, Յ. Աղաբաբի, Գիւղական տարրի դերը, բժ. Բ. Աղասարեանի. Հ. Կ. Կոմ. հաշւետուութիւնը, X-ի ԳԱՒԱՌ.—Փառակա, Բաթում, Ալիքուչաք։ ՏԱՐԵԳԻՐ Կ. Հ. Բ. ԸՆԿ. (Կ. Հ. Բ. Ընկ. Հ. Կ. Կոմիտէ)։ ԲՐՈՆԻԿՈՆ։ ԱՐՏԱՔԻՆ ՏԵՍՈՒԹԻՒՆ.—Ա. Կրապոտկինը պատերազմի մասին, Գ. Ենգիբարեանի։ ՏԱՃԿԱՀԱՅԵՐ.—Թիւրքական վայրագութիւնները։ ԳԵՂԱՐՈՒԵՍՏ.—Քաղաքի երգերից, Գ. Շահինեանի։ ՄԱՏԵՆԱԽՕՍՈՒԹԻՒՆ.—«Հայաստան, անցեալը ու ներկան» Վ. Լ. Ուիլլիամս, Մաժակի։ ՆԱՄԱԿ ԽՄԲԱԳՐՈՒԹԵԱՆ։ ՏԵՂԵԿԱՏՈՒ։ ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆՆԵՐ

## ՊԷՏՔ Է ԳԻՒՂԸ ԿԱԶՄԱԿԵՐՊԵԼ

(Գիւղացիական միութիւններ)

Ստեղծուած նոր հասարակական և քաղաքական պայմանները թելադրում են կազմել, բացի քաղաքական կուսակցութիւններից, և զանազան համախմբումներ՝ միատեսակ շահեր, կարիքներ և պահանջներ ունեցող։

Այդ համախմբումները գործում են միութեան անուան տակ, կազմւում են մեծ ու փոքր չափերով. նրանք ամփոփում են իրենց մէջ հասարակութեան որոշ դասակարգեր, խաւեր, երբեմն նոյն իսկ որոշ հիմնարկութիւնների մէջ աշխատողներ։

Նպատակն այն է, որ ամեն մի համախմբում մասնակից լինի ընդհանուր քաղաքական խնդիրների և առաջ տանի իր շահերը տեղական կամ ընդհանուր պետական օրէնսդրական եղանակով, նայելով թէ ինչ է ներկայացնում իրենից այս կամ այն միութիւնը։

Այս տեսակէտից առաջին տեղն է բռնում և արժանի է առանձին ուշադրութեան գիւղացութիւնը, որ Ռուսաստանում կազմակերպել է համարեա ամեն տեղ գիւղացիական միութիւն (крестьянскій союзъ)։ Իսկ գիւղացիական միութիւնները որոշ շրջանների երբեմն կազմում են համագումարներ, որտեղ, բացի իրենց քաղաքական պլատֆորման որոշելուց, պարզում են իրենց կարիքներն ու պահանջները և պատրաստւում են առաջիկայ Սահմանադիր Ժողովին հանդէս գալ իրենց առանձին անտեսական ծրագրով, որի ծանրութեան կենտրոնը լինելու է հողային խնդիրը։

Եռման մէջ են Ռուսաստանի ներքին նահանգների գիւղերը իրենց հողագործ աշխատաւորներով։ Այնտեղ կազմակերպուած գիւղացութիւնը տարուած է իր ամենակենսական խնդիրներով, որոնց լուծումն սպասւում է Սահմանադիր Ժողովից. կենդանութիւն է տիրում գիւղական շրջաններում. լաւագոյն յոյսերով են տոգորուած գիւղացիք. նրանց մասնակցութիւնը պետական կեանքի մէջ խոշոր նշանակութիւն է ունենալու։

Իսկ մեր գաւառները, մեր գիւղերը հակապատկեր են։

Մեր գիւղերը մատնուած են մոռացութեան, մնացել են անկազմ. նրանք զուրկ են մտաւոր և ղեկավարող ույժերից։ Եթէ պատահում են գիւղերում տեղական ինտելլիգենտներ, նրանք էլ յաճախ ընկղմուած են լի-

նում առօրեայ կեանքի հոգսերի մէջ, իսկ եթէ երբեմն դրսից են գալիս ժամանակաւոր ինտելլիգենտ այցելուներ, դրանք էլ թռուցիկ կերպով արծարծում են քաղաքական ծրագրեր՝ երբեմն շատերի համար ոչ մատչելի և մարսելի. յամենայն դէպս կազմակերպչական գործ չէ կատարւում։

Քաղաքական կուսակցութիւնների գործունէութիւնը գիւղական շրջաններում անհրաժեշտ է մանաւանդ այժմ, երբ հրատարակուած է իրաւունքների հաւասարութիւն, երբ բոլորն էլ—և քաղաքացի և գիւղացի—անուանւում են քաղաքացիներ, վերջապէս երբ ամեն մէկն ունի իրաւունք մասնակցելու ընդհանուր քաղաքական խնդիրների, ունի իրաւունք ընտրելու անգամ և ընտրուելու ըստ առաջին կարգի Սահմանադիր Ժողովի և յետոյ պետական պառլամենտի համար։

Սակայն նոյնքան անհրաժեշտ է, որ մեր գիւղացութիւնն էլ կազմակերպուի գիւղական միութիւնների անուան տակ, զբաղուի իրեն, գիւղացութեան, վերաբերուող խնդիրներով, ակտիւ դեր կատարի իր վիճակի մասին, իր ցաւերի մասին խօսի ինքը իր լեզուով. մշակի իր պահանջների ծրագիր՝ օրինական եղանակով լուծումն ստանալու համար։

Գիւղացութիւնը կազմակերպելու, նրան ծանօթացնելու Ռուսաստանի միութիւնների ծրագրերի և գործունէութեան հետ, ղեկավարելու նրան—գէթ սկզբում հարկաւոր են պատրաստի մտաւոր ոյժեր, հարկաւոր է, որ այդ մտաւոր աշխատաւորները մտնեն գիւղացի ժողովուրդի մէջ, շարժեն հետաքրքրութիւն, զարգացնեն գիտակցութիւն, կազմակերպեն գիւղացիական միութիւններ, որոնք իբր կազմակերպուած ոյժ կարող լինեն դնել պահանջներ և պաշտպանել ուր հարկն է։

Այդ պահանջների մէջ էականը կը լինի հողային հարցը հողագործի համար։

Եթէ ի նկատի առնենք, որ հայ ժողովուրդի 80 տոկոսը կազմում է գիւղացութիւնը, այն ժամանակ պարզ կը լինի, թէ հենց մեր հայ իրականութեան մէջ էլ ինչ մեծ ոյժ կը ներկայացնէր գիւղացութիւնը, եթէ կազմակերպուած լինէր։

Իսկ քանի որ նա չէ կազմակերպուած, հասարակական և քաղաքական տեսակէտից էլ ցանկալի ոյժը չէ ներկայացնում։

Գիւղացիական միութիւնների կազմակերպման խնդիրը պէտք է վերցնի իր վրայ մեր ինտելլիգենցիան կազմակերպուած մարմինների միջոցով. ինտելիգենտ աշխատաւորների ստուար մասը , պէտք է կազմեն հայ ուսանողները և ուսուցիչները, որոնք այսուհետև ամիսների ընթացքում ազատ են լինելու իրենց պարապմունքներից։

Ո՛վ նախանձախնդիր է մեր գիւղացութեան առաջադիմութեան, ով ցանկանում է, որ գիւղացին դուրս գայ իր այժմեան անկազմ դրութիւնից ու վայելի իր քաղաքական և հասարակական իրաւունքները. ով կողմնակից է, որ մեր գիւղացութիւնը Ռուսաստանի գիւղացութեան նման առաջ գայ իր պահանջների ծրագրով, թող շտապի մտնել գիւղ և կազմակերպի գիւղացիական միութիւն։

Եւ ահա թէ երբ միայն լսելի կը լինի իսկական գիւղացութեան ձայնը։

Գիւղը սպասում է կազմակերպիչների։

Ս. Յարութիւնեանց

---

## ՀԱՄԱՇԽԱՐՀԱՅԻՆ ՊԱՏԵՐԱԶՄԸ

Ռուսաց արեւմտեան ճակատում շաբաթուան ընթացքում տեղի են ունեցել միայն առաջապահ զօրամասերի հետախուզութիւններ և հրանօթաձգութիւն, առանց լուրջ հետևանքների։

Անգլօ-ֆրանսական ճակատում առանձնապէս տեղի են ունենում ուժեղ գրոհներ. ֆրանսացիք առաջանում են անընդհատ Կորնիլիէ սարից արևմուտք. Էպարժում նրանք մտան գերմանական խրամատները։ Այդ շրջանում ապրիլի 17-ին տեղի ունեցած կռւում ֆրանսացիք ձեռք բերին 520 գերի և 5 թընդանօթ։

«Հաւասի» գործակալութիւնը հաղորդում է, որ ապրիլ ամսուայ ընթացքում գերմանացիները կորցրել են 40,693 գերի, 437 թնդանօթ, 306 մորտիր և 882 գնդացիր։

Անգլիացիներն ապրիլի ընթացքում բռնեցին 19,343 գերի, որոնց մէջ 393 սպայ, 257 թնդանօթ և 70 գնդացիր։

Միջագետքում Բաղդադից դէպի արևմուտք անգլիացոց զօրքն առանց արգելքի յառաջանում է։ Ապրիլի 5-ին, 8-ին և 9-ին թիւրքական մի զօրագունդ ջարդուել է և մօտ 41,000 կորուստ է ունեցել։

Կովկասեան ճակատում շաբաթուան ընթացքում թիւրքերը դիմեցին եռանդուն գործունէութեան։ Գիւմուշխանէից հարաւ-արևմուտք նրանք մի քանի յարձակումներ գործեցին, բայց յետ մղուեցին, Օղնուտից հիւսիս դարձեալ նրանք յետ մղուեցին ռուսների կողմից,

---

## ՄԱՅԻՍԻ ՄԷԿԸ

1886 թուին Ամերիկայի Սէն-Լուի քաղաքի գործարաններում բանուորներին յաջողուեց երկար գործադուլից յետոյ ստիպել գործարանատերերին պակասեցնել աշխատանքի ժամերը։ Այդ յաղթական քայլն ահա յաւերժացաւ և Պարիզում գումարուած ընկերվարականների միջազգային համագումարից վերջ՝ մայիսի մէկը համարուեցաւ աշխատաւորութեան մեծ տօնը։

Ռուսաստանի բռնապետական կառավարութեան օրով խըստիւ արգիլւում էր տօնել մայիսի մէկը, որովհետև աշխատաւոր զանգուածը կարող էր այդպիսով արթնանալ և գիտակցել իր բըռնաբարուած իրաւունքները։

Բայց ազատութեան այս յանկարծահաս ու բաղձալի օրերին միլլիոնաւոր ժողովուրդը մեծ հանդիսաւորութեամբ և իւրայատուկ շքեղութեամբ կարողացաւ տօնել մայիսի մէկը։

Վարդերի ու կանաչների հետ փթթած այդ երջանիկ օրը՝ բազմահազար տանջուածների ուրախ երգերի հետ միախառնուած՝ իսկապէս որ մի խորհրդաւոր օր էր, երբ աշխատաւորի գունատ դէմքին ժպիտն էր խայտում և թախծոտ ու տրտմաթաթաւ աչքերի խորքում շողում էին երջանկութեան արցունքները։

Առաջին անգամն էր, որ աշխատաւոր զանգուածն լիաթոք շնչում էր ու գեղեցիկ հեռանկարներով ձգտում մի լուսաւոր ու խաղաղ ապագայի։

Առաջին անգամն էր, որ բանուորութիւնն՝ գործարանների

*ծխով ու մուխով խեղդուած մթնոլորտից դուրս էր գալիս, պայծառ արևի մաքուր օդի մէջ մի վայրկեան մոռանալու իր չարչարանքն, ինքնամոռաց մի ջերմութեամբ բանալու իր մտքի կոտրած թևերն, իր իրաւացի խօսքն ասելու, իր լռութեան դատապարտուած ցաւերն շշնջալու։*

*Հոգևոր փրկութեամբ օրօրող քրիստոնէութիւնից յետոյ Ընկերվարութիւնն միակ վարդապետութիւնն է, որ այնքան լայնածաւալ նուաճումներ գործեց, դարձաւ խոնարհ ու իրաւազուրկ դասերի կրօնք։*

*Ընկերվարութիւնն՝ այդ երկրային արքայութեան լոզունգն է, մարդկային իրաւահաւասարութեան հաւատամքը, որ քարոզում է ռուս գրականութեան հանճարեղ ներկայացուցիչ Տոլստոյը՝ մի ժամանակ աւետելով մարգարէական շունչով, թէ երկինքն այլևս պէտք է տեղափոխուի երկրի վրայ ու արքայութեան երանաւէտ ցնորքները, որոնք անմարմին ստուերների նման սաւառնում են միջնադարեան հոգիների վերևը, պէտք է մարմին ստանան, իջնեն հողի վրայ ու դառնան կեանքի գոյութեան հիմնաքարը։*

*Երկրային արքայութիւնն պայմանաւորուած է մարդկային ցեղի իրաւահաւասարութեամբ։*

*Մարդս հիմա այն չէ ստուգիւ ինչ որ երազում ու ձգտում էր դարեր առաջ, այլ այն Նախատիպը, ինչ որ ամենից առաջ ծնունդ առաւ կենդանական աշխարհից...։*

*Եւ ինչ աւելի սարսափելի ու անասնական բան՝ քան ուտել իրարու. ուտել՝ իշխելով նմանի կամքին, նրան ծառայեցնելով իր շահին ու քմահաճոյքին...։*

*Յեղափոխութիւնը ցոյց է տալիս որ արևը, որ կեանք, կենդանութիւն է տալիս մեզ, ստեղծուած է բոլորի համար։*

*Այս տարրական ճշմարտութիւնն է ահա, որ միշտ ոտնակոխուած է բանական մարդուց։*

*Այժմ քսաներորդ դարու քաղաքակրթութեան շէմքին, մարդկութեան միլիոնաւոր զանգուածի մի վիթխարի պատառը կքած է մի փոքր, բայց երջանիկ պատառի առաջ ու դարձած գերի նրա կամայականութեան։*

*Միլիոնաւոր մարդիկ դարձած են գերի մի երկու երկրային աստուածներու և մորթոտուում, խաչւում են անմռունչ։*

*Մարդիկ ծուխ ու մուխ են շնչում, խաւար խարխափելով, հեղձամղձուկ ու կորաքամակ, որպէսզի ոսկեայ գահոյքներ պատրաստեն իրենց նման փոքրաթիւ մարդկանց համար։*

*Այսպէս է աշխարհի կարգը։*

*Բայց ինչ աւելի սրտապինդ ու հոգեպարար, երբ կորաքամակ ամբոխը բանում է իւր նուաղկոտ աչքերն ու տեսնում հեռաւոր լոյսը, որ խաւարով անջատուած է իրենից։ Ահա նա ձգտում է հասնել այդ բաղձալի լոյսին։*

*Ապրել այն կեանքը, որ տիեզերական է։ Շնչել այն օդը, որ հասարակաց է։ Գրկել ու համբուրել այն արևը, որ բոլորի համար է ուղարկուած...։*

*Թորգոմ*

---

## ՊԵՏԱԿԱՆ-ՏԱՐՐԱԿԱՆ ԴՊՐՈՑՆԵՐԻ ԱԶԳԱՅՆԱՑՄԱՆ ԽՆԴԻՐԸ

*Պետական-տարրական դպրոցների ազգայնացումը՝ որքան նորութիւն է Ռուսաստանի ազգաբնակութեան կրթական գործում՝ այնքան էլ մանկավարժական է իւր ամբողջ իմաստով։*

*Սոյն ազգայնացման խնդրով՝ հրապարակ է գալի այն փայփայելի սկզբունքը, որ իւրաքանչիւր ազգի մանուկ սերունդը հնարաւորութիւն է ստանում ուսումն ստանալու իւր մայրենի լեզուով։*

*Մայրենի լեզուի ոյժը կրթական գործում—առաւելապէս տարրական դպրոցների սահմանում—այնքան մեծ է և այնքան խոշոր, որ մեր՝ դպրոցական գործով զբաղուողներիս համար՝ միանգամայն հասկանալի են դրա տալիք արդիւնքները։ Այնպէս որ՝ ես համոզուած եմ, որ ազգայնացման խնդրի վերաբերմամբ այլևս երկբայելի ոչինչ չի կարող լինել մեզ համար։*

*Բայց որքան շատ են դպրոցների ազգայնացման արդիւնքները, այնքան մտածելի և խորհելի են այն միջոցները, որոնցով մենք պէտք է այդ գործն ի գլուխ բերենք։*

*Մասնաւորելով իմ խօսքը Կովկասի հայութեան համար բացուած պետական-տարրական դպրոցների շուրջը՝ պէտք է ասեմ, որ այդ դպրոցների ազգայնացման խնդրում երկու խոշոր աշխատանք կայ կատարելու.—մէկը՝ ծրագրային, զուտ ուսումնական գործի վերաբերեալ, միւսը՝ տեխնիքական՝ զուտ յարմարութիւնների դասաւորութեան վերաբերեալ։*

*Յիշեալ երկու խնդիրներն իրենց մէջ ամփոփելով աւելի ուրիշ մանրամասներ՝ նրանք բոլորը ժամանակի ընթացքում կը վերանան՝ երբ ծրագրային և տեխնիքական խնդիրները՝ դէթ ժամանակաւորապէս կը կարգադրուեն յօգուտ ազգայնացման գործի։*

*Ծրագրային խնդիրն իւր էութեամբ պարզ է. պետական-տարրական դպրոցներում՝ պէտք է առաջ տանուի ուսման գործը այն ծրագրով, որը յատուկ է իւրաքանչիւր ազգի ազգային դպրոցներին։ Օրինակ՝ Թիֆլիսում կան մի շարք քաղաքային-հայկական դպրոցներ, ուր ցայսօր ուսման գործը առաջ է տարուել մինիստրական դպրոցների ծրագրով. ահա այդօրինակ դպրոցներում պէտք է հիմնովին վերանան այդ հին ծրագրերը և պէտք է առաջ քաշուեն մեր ազգային՝ ծխական դպրոցների այն ծրագրերը, որով մինչև օրս ղեկավարւում են մեր ծխական դպրոցները։*

*Այդ ծրագիրը—իւր մի քանի պակասութիւններով—յամենայն դէպս գրուած է ազգային տեսակէտի և մայրենի լեզուի տիրապետութեան վրայ։ Այդ ծրագրով 8—15 տարեկան աշակերտ-աշակերտուհին սովորում է իբրև հայ՝ ծրագրային այն առարկաները, որոնք նախատեսնուած են այդ հասակի աշակերտութեան համար։*

*Հանգամանքները ներելուն պէս կարելի կը լինէր այդ ծրագիրն աւելի բարեփոխել, լրացնել և այնուհետև տալ ի գործադրութիւն թէ ծխական և թէ ազգայնացրած հայկական դըպրոցներին։*

*Մեր ծխական դպրոցների ծրագրով՝ ազգայնացրած հայկական դպրոցներում մուտք են գործում հետևեալ նորութիւնները.—նախ որ իշխող լեզուն դառնում է մայրենի լեզուն, այն է՝ հայերէնը, ռուսերէն լեզուն լինում է իբրև առարկայ և ուսուցւում է իբրև կառավարութեան լեզուն։ Ու այդպէս շարունակւում է մինչև ծխական վեցամեայ դպրոցների ամբողջ կուրսի սպառումը։ Ռուսաց լեզուի ուսուցումը սկսւում է բանաւոր երկրորդ տարուայ երկրորդ կիսամեակից՝ իսկ տառագիտութեան—ընթերցանութեան ուսուցումը սկսւում է երրորդ տարուայ սկզբից։ Մի տեսակէտ, որ ընդունուած էր մեր այժմեան ծրագրի նախագծում, բայց յետոյ որոշ նկատումներով մեր դպրոցական վարչութիւնը ստիպուած եղաւ դպրոցներին ուղարկած իւր պարտադիր ծրագրում ռուսաց լեզուին տեղ տալ II տարուայ ուսուցման սկզբից շաբաթական վեց դաս՝ մայրենի լեզուին հաւասար։ Մի ուղղում, որ կատարուեց ի վնաս մայրենի լեզուի բարգաւաճման և ի շեղում մանկավարժական հասկացողութիւններից։*

*Ազգայնացուած հայկական-տարրական դպրոցներում մեր ծրագրով մուտք են գործում այնուհետև հետևեալ նորութիւնները.—Առաջին տարուց սկսած աւանդւում է իրագիտութիւն մինչև*

*Ո տարուայ վերջը։ Ա տարուց աւանդւում են Հայրենագիտութիւն՝ հայոց պատմութեան իմաստով—նախամարդ—և աշխարհագրութիւն։ Աւանդւում է բնագիտութիւն Ա-ից մինչև VI-ի վերջը, և մի երկու էլ ուրիշ առարկաներ VI-ում։ Թէ յիշեալ առարկաները և թուաբանութիւնը սկզբից սկսած աւանդւում են մայրենի լեզուով։ Մինչև այդ մինիստրական տարրական դըպրոցների ծրագրում չկայ՝ ոչ միայն իրագիտութիւն ցածր դասարաններում, այլ և չկայ բնագիտութիւն միջին դասարաններում իբրև յատուկ առարկայ։ Սրանք են այն խոշոր նորութիւնները, որ մեր ծրագրով ներս են մուծուելու ազգայնացուած դպրոցներում։*

*Ց. Աղաբաբ*

*(Շարունակութիւնը հետևեալով)*

## ԳԻՒՂԱԿԱՆ ՏԱՐՐԻ ԴԵՐԸ *)

III

*Անցնենք այժմ մեր գիւղական տարրի պայմաններին։ Հայ գիւղական տարրը՝ համեմատած իր դրացի ազգերի հետ աւելի նուազ տոկոս է տալիս, ինչպէս այդ ցոյց է տուել պ. Բ. Իշխանեանը իր նորագոյն աշխատութեան մէջ **)։ Ահա այդ տոկոսը․ հայերի գիւղական աշխատանքով պարապողների տոկոսը հաւասար է 71, 27 տոկոս։ Վրացիներինը—79, 10 տոկոս։ Թուրքերինը—81, 66 տոկոս։ Իսկ քաղաքային ազգաբնակութեան կողմից՝ հայերը առաջի տեղն են բռնում՝ 21, 4 տոկոս, ռուսները 16, 6 տոկոս, թուրքերը՝ 16, 61 տոկոս, վրացիք՝ 9, 30 տոկոս։ Եւ այդ հոսանքը հայերի դէպի քաղաքները կամ ուրիշ գաղթավայրեր տարէցտարի աճում է։ Հայ գիւղացին գաղթում է թէ քաղաքներ և թէ ուրիշ վայրեր, մանաւանդ Անդրկասպեան երկիրներ, և վերջերս մինչև անգամ Ամերիկա Ալէքսանդրապոլի կողմերից։ Ի՞նչն է ստիպում մեր գիւղացուն թողնել իր ծննդավայր գիւղը և յաճախ ընտանիքը զաւակներով՝ օտարութեան մէջ բախտ որոնելու։ Գլխաւոր պատճառը՝ հողի և ջրի պակասութիւնը է, որոնք չեն կարողանում նրան ապրեցնել իր ծննդավայրում։ Ես այդ հարցի առթիւ խօսել եմ Հ. Գիւղ. Ընկ. մէջ քանիցս բերելով օրինակներ, ի միջի այլոց, Արէշի գաւառի հայաբնակ վայրերից, ուր հայ գիւղականը առաջներում երբէք հացի պակասութիւն չի զգացել, իսկ այժմ կիսաքաղց կեանք է վարում։*

*Առաջներում նա ունեցել է շատ հողեր, որոնց շատ մասը գիւղական բանկը վերջերս առել է կալուածատէրերից և տուել մոլականներին, բերելով շոգեմեքենայով ջուր խոր հոսող Թուրղան գետից։ Խօսքս Սարուջայ կոչուող դաշտավայրի մասին է, որը մէկ քանի հայ գիւղերի տրամադրութեան տակ էր գտնւում։ Եւ այդ գիւղերը չնայած՝ ոչ միայն ոռոգելու, այլ և խմելու ջրի պակասութեան, շնորհիւ հողի առատութեան և զարմանալի պըտղաւէտութեան, ապրում էին՝ առատ հացահատիկ ունենալով, որոնք բաւարարում էին նրանց բոլոր կարիքներին։ Այժմ այդ գիւղացիք վերոյիշեալ պատճառներով վերջին ծայր աղքատութեան մէջ են։ Առաջներում այդ գիւղերից օտար վայրեր գնացողներ չէին պատահում, բայց այժմ սկսել է հոսանք դէպի քաղաքները, մանաւանդ Բագու։ Եւ ամենից շատ Ղարաբաղն է տալիս մեծ հոսանք գաղթականութեան դէպի հեռու վայրերը, մանաւանդ Բագու, Անդրկասպեան երկիրը, ուր ոմանք կարճ ժամանակում հարստանում են և այս դառնում է նոր պատճառ գիւղացոց արտագաղթի։ Զիւանշիր գաւառում լեռնաբնակ մէկ քանի գիւղեր՝ թէ հողի և թէ ոռոգելու ջրի պակասութեան պատճառով տալիս են մեծ հոսանք գաղթականութեան։ Այդ գաւառի ամենամեծ գիւղը՝ Կուսապատը, որը յայտնի էր իր առատ հացահատիկով, այժմ մօտակայ բէկերի հողերը մշակելով է հայթայթում իր ապրուստը, որովհետև ջուրը պակաս է․ իսկ ջուր կարելի է բերել, եթէ գիւղացիք միանան և կամ դրսի օգնութեամբ։*

*Թէ ո՛ր աստիճանի է հասնում արտագաղթը Ղարաբաղից, որը տալիս է ամենամեծ տոկոսը գաղթականութեան, այդ լուսաբանել է բժ. Լ. Աթաբէկեանը իր լուրջ ուսումնասիրութեամբ «Առողջ կեանք» ամսագրի № 2 և 3-ում «Ղարաբաղը նաւթաշխարհում» յօդուածով։*

*Ամբողջ Անդրկովկասը իր 7.593,445 բնակիչներով տալիս է հանքագործարանային շրջանին 28,919 գաղթական, այսինքն 10,000-ից 37 հոգի, իսկ Ղարաբաղը 4 գաւառների 223,335 հայ բնակիչները տալիս են նոյն շրջանին 10,214 գաղթական, այսինքն իւր 10,000 բնակչից 104-ը ամբողջ նաւթաշխարհին։ Անդրկովկասը տալիս է իւր 10,000 բնակչից 104-ը, Ղարաբաղը 1066»։*

*Ամենից շատ բանուորներ է տալիս զանգեզուրցին՝ 93 տոկոս, ապա ջէբրայիլցին՝ 86 տոկոս, ամենից պակաս շուշեցին՝ 76 տոկոս։ Գալով գրագիտութեան՝ յարգելի բժիշկը տալիս է հետևեալ աղիւսակը՝*

*Բագու քաղաքում 1000 հոգուց (5 տարեկանից բարձր)*

| | Գրագէտ | Անգրագէտ |
|---|---|---|
| Ռուս | 623 | 377 |
| Հայ | 635 | 365 |
| Թուրք | 223 | 777 |
| Վրացի | 830 | 170 |
| Հրէայ | 829 | 171 |
| Լեհ | 858 | 142 |

*Հանքագործարանի շրջանի վաստակող բանուորը*

| | Գրագէտ | Անգրագէտ |
|---|---|---|
| Ռուս | 68 տոկոս | 32 տոկոս |
| Հայ | 39 » | 61 » |
| Վրացի | 73 » | 27 » |
| Թուրք և պարսիկ | 13 » | 87 » |

*Շատ հետաքրքրական է և ամուսնութեան վերաբերեալ տեղեկութիւնները։ «Ամբողջ Գանձակի նահանգի 58,686 ամուսնացած հայ կանանցից 4,315 ամուսիններ նահանգից դուրս օտարութեան մէջ են, այսինքն 1000-ից 74-ը։ Քաղաքում 1,000 ամուսնացած հայ կանանցից 135-ի ամուսինները օտարութեան մէջ են։ Գանձակի նահանգի թուրք բնակչութեան ամուսնացած տղամարդկանց և կանանց թիւը գրեթէ հաւասար են իրար (112,386 և 112,275)։*

*Ղարաբաղը ըստ երևոյթին դեռ 1897 թուին եղել է մանուկների և այրի կանանց մի երկիր։ Ղարաբաղում հայերը աւելի ուշ և աւելի քիչ են ամուսնանում քան թուրքերը, առաւել ևս քաղաքներում։*

*Մեր յարգելի ընկերակցի աշխատութիւնը մի շատ գնահատելի գործ է, որը վերաբերում է հայ գիւղի ֆիզիքական հարցին։ Նիւթեր հեղինակը վերցրել է 1897 ընդհանուր մարդահամարի և 1914 Կովկասի օրացոյցի Գանձակի նահանգին վերաբերող ստատիստիկական տեղեկութիւններից, միւս կողմից և Բագուի և հանքագործարանային շրջանի 1913-ի մարդահամար տուեալները։*

*Երանի նոյնանման հետազօտութիւններ ունենայինք բացի Ղարաբաղից և միւս շրջանների մասին, և արժէ այդ մասին մտածել մեզ հայերիս մանաւանդ, երբ տաճկահայերի խոշոր մասը ֆիզիքապէս ոչնչացել է․ իսկ յայտնի է, որ ֆիզիքական գոյութեան հարցը ամեն ազգի կեանքի և մահուան հարց է, իսկ*

*) Տես «Համբաւաբեր» № 14։

**) Б. Ишханянъ, Народности Кавказа, 1917 г. Петроградъ.

զաղթականութիւնը մինչև օրս ցրուած ազգի համար ներկայումս մահացու հարուած է։

Բժշ. Բ. Աղասարեան

(Շարունակութիւնը հետեւեալով)

---

## Հ. Կ. ԿՈՄԻՏԷԻ ՀԱՇՈՒԵՏՈՒԹԻՒՆԸ

Կ. Հ. Բ. Ընկ. կից գործող Հ. Կենտ. Կոմիտէն և պարենաւորման բաժանմունքը հրատարակել է մի մանրամասն տեղեկագիր սկսեալ 1915 թուի օգոստոսից մինչև 1917 թ. յունուար 1-ը և պարունակում է իր մէջ Կոմիտէի գործունէութեան, դպրոցների, որբանոցների, արհեստանոցների, փախստականների վիճակագրութեան հաշուետուութիւնը։

Փախստականների ընդհ. թիւը, համաձայն 14 յունուարի 1916 թ. վիճակագրութեան, ցոյց է տալիս հետևեալը՝ 267,000 հոգի ցուցակագրուած, իսկ վիճակագրութեան մէջ չընկածների հետ միասին 300,000 հոգի։

Փախստականներից 39,562 հոգի երկրագործ են, 2,927 վաճառական, 2,601 արհեստաւոր, 278 մտաւորական։ Փախստ. ընտանիքների ընդհ. թիւը կազմում է 45,368, որից սպանուած կամ մեռած են 69,107 անձ։ 45,368 ընտանիքից 95,263 տղամարդ, 104,286 կին, աշխատանքի ընդունակների թիւը հաշւում է 16,017 անձ։

Հ. Կենտ. Կոմիտէն կազմուած է Կ. Հ. Բ. Ընկ. կից՝ պ. Ս. Յարութիւնեանի նախագահութեամբ և գործում է Կ. Հ. Բ. Ընկերութեան 65 պաշտօնական ճիւղերի միջոցով։ Իր հովանաւորութեան ներքոյ այժմ ունի 147 դպրոց՝ 230 բաժանմունքով, 11,130 աշակերտ և 255 ուսուցիչ։ Որբանոցների թիւը հասնում է 52 ի՝ 4,363 երեխայով։

Հ. Կ. Կոմիտէն բացել է արհեստանոցներ՝ դերձականոց, մանարան, կազմատուն, կօշկակարանոց, ոսկերչանոց, ատաղձագործարան, չուստանոց, կարուձևի արհեստանոց և այլն, ընդամէնը 15 արհեստանոց։ Մի քանի տեղերում երկրագործութեան համար հողեր կան վարձուած. այս բոլորի մէջ աշխատում են 800 փախստական։

Պարենաւորման բաժանմունքը մինչև 1 յունուարի 1917 թ. ունէր 1,400,000 ռ., որից 200,000 ը գործադրուած է բեռնատարքի (տրանսպորտի), նրանց պահպանութեան, զանազան կահաւորման և իրերի համար։ 1917 թուից յետոյ դրամագլուխն բարձրացաւ 2,000,000 ռուբլու գումարի։ Կոմիտէի բոլոր հիմնարկութեանց պաշտօնեաների թիւը հասնում է 767-ի, որից 487 տաճկահայ, 280 ռուսահայ։

Մինչև 1916 թ. մայիսի 31-ը Կոմիտէի հաշուեկշիռն եղել է 1,334,898 ռ. 97 կ.։ Կոմիտէն զանազան անձերից և հաստատութիւններից ստացել է ընդամէնը՝ 598,661 ռ. 22 կ.։

Տեղեկագրին կցուած է գաղթականների տեղաւորած վայրերի երկու քարտէզը և ելևմտից հաշիւը։

X.

---

## Գ Ա Ւ Ա Ռ

Փառակա (Հին-Նախիջևանի գաւառ), 22 փետր.

Գիւղը օրէցօր մօտենում է մահուան, արդէն սովը սկսել է ծայր տալ։ Անցեալ օրը մի աղքատ ընտանիքի չորս մանր երեխաները, որոնց միայն հիւանդ մայրն է մնացել տանը, 2 օր քաղցած մնալուց յետոյ, ընկել էին փողոցները՝ հաց մուրալու, բայց ո՞վ կը տար նրանց հաց և վերջապէս ո՞րտեղից տան, երբ իրենք էլ մի քանի օրից նոյն վիճակին են ընկնելու։

Գիւղը այսպիսի ճգնաժամին, մի պաշտպան ունի, որից և միշտ սպասում է իր փրկութիւնը։

Թիֆլիսաբնակ պ. Ղևոնդ Յակոբեանն է դա, որը 20 տարուց աւելի է, ինչ հոգում է ծխ. դպրոցի մասին, ամեն տարի ուղարկելով ժամանակին ուսուցիչներ. նա է, որ շինել է դպրոցի գեղեցիկ շէնքը իր ծախսով, ամեն տարի հոգացել ու հոգում է դպրոցի բիւջէի կէսից աւելին. մօտ օրերս նա իր հաշուին իւրաքանչիւր ուսուցչին 50 ռ. յաւելեալ նպաստ տուաւ։

Գիւղացիները անցեալ շաբթին մի հանրագրով դիմել էին յիշեալ պարոնին խնդրելով, որ իրենց համար 2 վագոն ցորեն ուղարկի, հակառակ դէպքում գիւղում սով է լինելու, և ահա վերջին փոստով պարոնը պատասխանեց.—Չնայելով, որ ինքը շատ գործեր ունի, բայց գիտակցելով, որ այդ գործը շատ աւելի կարեւոր է, քան իր անձնական գործերը ինքը պատրաստ է 3 վագոն ցորեն բերել գիւղը, որից 2 վագոնը բաժանելու է գիւղի աղքատ ընտանիքներին և զինուորների կանանց, առքի գնով, իսկ աւելացածը, ունեւորներին 50 կ. պուդին յաւելումով. միւս վագոնը բաժանելու է շրջակայ գիւղերի աղքատ ընտանիքներին և զինուորների կանանց՝ թէ հային եւ թէ թիւրքին անխտիր։

Գալուստ Ռշտունի

—

## ԲԱԹՈՒՄԻ ՀԱՅԿԱԿԱՆ ՈՐԲԱՆՈՑԸ

Բաթումի հայոց որբանոցում պատսպարւում են 72-ի չափ երկու սեռի որբեր՝ Տրապիզոնից և շրջականերից հաւաքած։ Որբանոցին կից կայ դպրոց 3 բաժանմունքով և մի ծաղկոց։

Յունուար ամսից որբանոցին կից բացուած է նաև արհեստանոց, հրաւիրուած է (30 ռուբլով և ամեն ինչ պատրաստ) մի փախստական վարպետուհի, որը որբերին արհեստանոցում ձեռագործ, թելից հիւսուած չուստեր և այլ գործուածքներ է սովորեցնում։

Որբանոցի խնամակալը Կ. Հ. Բ. Ընկ. տեղիս ճիւղի վարչութեան ուժեղացրած կազմն է, որի եռանդուն հոգացողութեան շնորհիւ որբանոցի գործը տարւում է աչալուրջ և բարեխիղճ։ Մաքրութիւնը լաւ է, սնունդը բաւարար։ Առողջապահական մասը վարում է ձրիաբար բժ. պ. Մ. Մինասեանը մի ֆելդշերի հետ։ Բժշկի գործ դրած ջանքերի շնորհիւ մահացութեան և սուր հիւանդութեան դէպքեր չեն եղել։ Գլխի վէրքը իսպառ ոչնչացուած է։ Նոր ընդունուած որբերի միջոցով տարածուեց բոր հիւանդութիւնը, որը արդէն վերջացել է։ Մալարիայի 15 դէպք, բրոնխիտի՝ 4, անգինա՝ 8, սուր յօդացաւ (ռեւմատիզմ) 1, խրոնիկ յօդացաւ՝ 3, խօզուկ՝ (ովինկա) 2. թոքախտ՝ 1 և թեթև հիւանդութեան դէպքեր են պատահել անցեալ հոկտեմբերից մինչև այս մարտի 15-ը։

Ռուբէն Իսկէնդերեան

Բաթում, 22 մարտի։

—

Ալիքուչաք.—«Համբաւաբերի» № 6, փետր. 12 թուի մէջ կարդալով «Ապարանի շրջանը և գաղթականութիւնը» վերնագրով յօդուածը, որի պարունակութեան՝ աւելի տեղեակ լինելով պարտք կը համարեմ ինձ յայտարարել հետևեալը. Յօդուածագիր Մ. Բարսեղեանը գրում է թէ 1916 թուի յուն. 10-ին Եղբայր. Օգնութիւնը Ալիքուչաք գիւղում՝ շաքար, բրինձ և այլն իրեր բաժանած է։

Այդ իրերը բաժանել է Մոսկուայի Հայկ. Կոմիտէն, ոչ թէ Եղբայր. Օգնութիւնը։

1. Մ. Բարսեղեան գրում է. 1916 Թ. մայիսին հագուստ բաժանուեց Եղբայր. Օգնութեան կողմից, այդ բաժանումին շահախնդիր եղան Ինկլիզ Պօղոսեան և Նազարէթ դրան աւելացնում է թէ պէտք է այդ ընկերութիւն հեռացնի իւր պաշտօնեաներին։

Սա էլ իրականութեան բոլորովին հակառակ է. հագուստեղէն բաժնելուն այդ Ինկլիզը ոև է՛ գործ չէ ունեցած. բաժնած ենք, Յ. Փառուանեանի կողմից ղրկուած Արշակ Բէմալեանը և ես։ Ղրկուած 1,200 կտոր զգեստները բաժանած ենք 3,200 անհատ գաղթականութեան, ցուցակը կազմուած է երեք գաղթ. քահանաների և գիւղերի ներկայացուցիչների կողմից, ղրկուած պ. Յ. Փառուանեանին։ Իսկ եթէ եղած են փաստեր բաժանող պարոնների անբարեխղճութիւնն ապացուցող—ինչո՞ւ էք լռած։

2) Մ. Բարսեղեանը կըսէ որ, դեղատուն մը կայ Ալիքուչաքում գաղթականների համար, բայց գաղթականները սիրով չեն դիմեր, քանի՞որ դժուարութիւններ են յարուցւում վարիչների կողմից։

Մոսկ. Հայկական Կոմիտէն երբ իւր առաջի գործունէութիւն սկսեց Աշտարակում, «I խումբի» բժշկական և սննդատու ճիւղերով իւր վրայ վերցրած է նաև Եղուարդի ու Ապարանի շրջանները։

Ապարանում ունի մի «ֆելդշերական կայան»,օրական կընդունի 40—50 այցելու հիւանդներ տեղացի և գաղթական, որոնց ձրի դեղեր կը տրուին Կոմիտէի կարգադրութեամբ. և սոյն տողեր գրող ֆելդշերը առնուազն շաբաթ երկու անգամ կայցելէ գիւղեր գաղթ. հիւանդների համար, որք անկարող են գալ Ալիքուչաք։

3) Մ. Բարսեղեանը կսէ, որ «Ալիքուչաքում բացուած է Սպառողական խանութ, բայց պարագլուխներ շահախնդիր մարդիկ լինելու համար փակուած է։»

Բժ. Արշակ. Պօղոսեանի Ալիքուչաք եղած ժամանակ, Մոսկ. Ընկ. կողմից ղրկուեցաւ 10 պուդ նաւթ, ֆունտը 8 կ. ծախուելու և երկու պուդ սապոն, ֆունտը 24 կոպ. ծախուելու գաղթականներին։

Ընդամենն այսքան նիւթով ինչպէս կարելի է սպառողական խանութ անուն տալ և պարագլուխները ինչ շահախնդրութիւն ունեցած են։

Գ. Մ. Բարսեղեանը փոխանակ Նազարէթը Ինկլիզ Պօղոսեանին արքանեակ հաշուելուն աւելի ազնիւ եղած կըլլար, որ իւր անունը յիշեալի կողքին գրէր, իբրև ներկայացուցիչ գաղթականների։

Գաղթականների վեց ամսեայ տներու վարձք բաժնելուն համար իրենց 8 օրուայ պաշտօնի մէջ ցուցուցին այնպիսի անփոյթ վերաբերմունք, որ ժողովուրդ բողոքեց և ղրկեց զիրենք պաշտօնից։

Մ. Բարսեղեանը, որ մէկ ու կէս տարի ապրած է Ապարանում, զարմանալի է որ չի կարողացել հասկնալ՝ թէ ո՞ր Ընկերութիւնն է գործում այդ շրջանում և չի տեսնում Ալիքուչաքում եղած դեղատան բարեբեր օգտակարութիւնը ժողովրդի համար։ Մի մարդ, որ ճշմարտութիւն խօսելու ոյժ չունի և զբաղւում է ի զուր տեղ «Համբաւաբերի» սուղ էջերը գրաւել իւր անստոյգ և դիտումնաւոր յօդուածներով։

Նազարէթ Ատոմեան

## ՏԱՐԵԳԻՐ ԲԱՐԵԳՈՐԾՈՒԹԵԱՆ

Կ. Հ. Բ. ԸՆԿ.

Կ. Հ. Բ. Ընկ. Խորհուրդը շնորհակալութեամբ ստացել է.—

— Հանգ. Եղիսաբեթ Բեհբուդեանի որդիներից յօգուտ Կ. Հ. Բար. Ընկ. 150 ռ. և յօգուտ փախստակ. 100 ռ., ընդամենը 250 ռ.։

— Եղիսաբեթ Եւանգուլեանից յօգուտ որբերի 5 ռ.։

———

13-ն ապրիլի կայացաւ Հ. Կ. Կ. նիստը, նախագահութեամբ պ. Ս. Յարութիւնեանի։

Ա. պ. նախագահը զեկուց, որ Լոնդոնից օր. Ռոբինզոնից Կոմիտէն ստացել է՝ 6,000 ռ. յօգուտ Դիլիջանի արհեստանոցի և Ալէքսանդրապոլի Սասունցիների որբանոցի և 15,000 ռ. Մանչեստրից։

Բ. Տիկ. Ս. Օգանեզեանը ներկայացրեց ժողովին Կոմիտէիս «Մի բաժակ թէյ»-ի մարտ ամսուայ հաշիւները, որից երևաց, որ մարտ ամսին մուտք է եղել թէյի, սուրճի վաճառումից 13,457 ռ. 44 կ., ծախս՝ 9,297 ռ. 47 կ., զուտ արդիւնք՝ 4,159 ռ. 97 կ., որ և գումարը ներկայացուեց ժողովին մուծելու Կոմիտէիս կասսան։

Գ. Էրզերումի շրջանի լիազօրը պ. Սիմ. Տէր-Յակոբեանցը տուեց մի համառօտ զեկուցում Էրզրումի գաղթականութեան, որբանոցի և գաղթ. դպ. մասին, ըստ որում ի նկատի ունենալով մի շարք աննպաստ պայմաններ՝ թանգութիւն, մթերքների սակաւութիւն, որոշուեց Էրզրումի որբանոցը առաջին հերթին տեղափոխել Շուշի։

— Հ. Կենտր. Կոմիտէն շնորհակալութեամբ ստացել է Սամարայի Հայ Կանանց Կոմիտէից 19 կապոց զանազան շորեր գաղթականութեան համար։ Իրերը կուղարկուեն մօտիկ ապագայում Խնուսի կամ Էրզրումի շրջանը։

## Ք Ր Ո Ն Ի Կ Ո Ն

Ամսիս 20-ին Թոքախտի դէմ մաքառող ընկերութեան օգտին կայացաւ մի օրեայ ժողովարարութիւն։

— Մայիսի 1-ի տօնը Թիֆլիսում կայացաւ ըստ նոր տոմարի, այն է ամսիս 18-ին։

Չնայած որ օրը անձրևային էր, բայց և այնպէս տօնուեց մեծ շքեղութեամբ բանուորների, զօրքի և ժողովրդի գործակցութեամբ։

Բանուորների և զինուորների ներկայացուցիչներից շատերը ճառեր ասացին ահագին բազմութեան ներկայութեամբ։

—Ամսիս 16-ին կայացաւ Թիֆլ. Բազ. Վարկի Ընկ. ընդհանուր ժողովը, ուր հաստատուեց 1916 Թ. հաշիւը և 1917 Թ. նախահաշիւը. եղան ընտրութիւններ և որոշուեց ծառայողներից իւրաքանչիւրին թանկութեան պատճառով տալ նուէր 6 ամսուայ ռոճիկ։

—Թիֆլիսում սկսել է լոյս տեսնել հայերէն նոր օրաթերթ «Հայաստան» անունով։ Լրագիրը ծառայելու թրքահայոց կարիքներին

—Հայ ուսանողների համառուսական համագումարը, որ պիտի տեղի ունենար Մոսկուայում, քաղաքների համաձայնութեամբ փոխադրուած է Բագու, ուր կը կայանայ ապրիլի 25-ին։

—Այսօր Կարապետեանի այգում յօգուտ «Մեղու» աշխատանքի տան բանուորուհիների փոխատու-խնայողական դրամարկղի կայանալու է մեծ զբօսանք։

—Նաւթարդիւնաբերող Նոբէլը յայտնեց, որ նաւթարդիւնաբերողները զինուորական փոխառութեանը բաժնեգրուել են 30,000,000 ռ., իսկ մետաղագործական ձեռնարկութիւնները՝ 10,000,000 ռ.

—Մօտ օրերս Թիֆլիսում հրատարակուելու է ռուսերէն լեզուով

քաղաքական օրաթերթ ուսուցչապետ Ն. Ա. Դուբրովսկու խմբագրութեամբ, «Республика» անունով։ Թերթին աշխատակցելու են ռուս, հայ և վրացի հրապարակախօսներ։

— Ապրիլի 15-ից Կովկասեան չերամապահական կայարանին կից բացուեցին չերամապահական հանրամատչելի դասընթացներ, որ տևելու են մինչև մայիսի 31-ը։

— Անդրկովկասեան առանձին Կոմիտէն հաստատեց Թիֆլիսի նահանգի ժողովրդական դպրոցների ուսուցիչների համագումարի որոշումները, որոնք վերաբերում են ընդհանրապէս դպրոցական գործի բարեփոխութեան և ուսուցիչների դրութեան բարելաւման։

— Թիֆլիս է եկել Ատրպատականի Թեմի առաջնորդ Ներսէս եպիսկոպոսը։

# Արտաքին տեսութիւն

## Պ. Ա. ԿՐԱՊՈՏԿԻՆԸ ՊԱՏԵՐԱԶՄԻ ՄԱՍԻՆ

Յայտնի ռուս յեղափոխական Կրապոտկինը, որ ամբողջ կեանքը անցրել էր հայրենիքից փախած աքսորական, դեռ 1914 թուին գրել է մի քանի նամակներ իւր բարեկամ Բուրցեւին ներկայ պատերազմի մասին։ Որովհետև կան այնպիսի մարդիկ, որոնք շլացած են Վիլհելմի ուժով՝ Կրապոտկինի պէս մեծ մարդու կարծիքը այս պատերազմի մասին միանգամայն կարևոր է տարածել։

Այս նպատակով մենք ռուսերէնից պատմում ենք այդ նամակների բովանդակութիւնը։

— —

Իմ թանկագին բարեկամ.

Ահա իմ կարծիքը պատերազմի մասին կարճ և պարզ։

Ներկայ պայմաններում ամեն մէկը, որ ոյժ ունի որևէ բան անելու և ում համար թանգ են եւրոպական քաղաքակրթութեան լաւագոյն արժէքները և ինչի համար կռուել է միջազգային աշխատաւոր մասսան՝ կարող է մի բան անել, այն է՝ օգնել Եւրոպային ճխլելու մեր ամենաթանկագին աւանդների թշնամուն—գերմանական միլիտարիզմը և իմպերիալիզմը։

Այս թշնամու հետ կռւում էին դեռ 1871 թուին Լիբկնէխտը և Բեբէլը ֆրանգ-պրուսական պատերազմից անմիջապէս յետոյ, երբոր նրանք բողոքեցին Էլզասը և Լոտարինգիան Գերմանիայի հետ միացնելու դէմ այդ երկիրների ժողովրդի կամքի հակառակ։ Սրանք այն թալանչութիւնը համարում էին նոր և անխուսափելի պատերազմների գրաւական և ըստ այնմ քաղաքակրթութեան և յառաջադիմութեան խոչընդոտ։

Ձախ բանակից նոյն թշնամու դէմ կռւում էր և Բակունինը, որ աշխատում էր Հարաւային Ֆրանսիայում յառաջ բերել ազատարար շարժում, բայց՝ երբոր այս չյաջողուեց՝ նա աշխատում էր Եւրոպայի հասարակական կարծիքը այս կողոպուտի դէմ կանգնեցնելու իւր Lettres à un francais նամակներով և այն յօդուածներով, որ նա իւր կտակն էր անուանում։

Նապոլէոն III-ի անկումից անմիջապէս յետոյ և հասարակապետութեան յայտարարելուն պէս ի պաշտպանութիւն Ֆրանսիայի դուրս եկաւ ծերունի Գարիբալդին իւր կամաւորներով, և հեռագիրը ծանուց Եւրոպային թէ Կապրի առիծը ափ իջաւ Մարսէլում գերմանական արշաւանքի դէմ կռուելու ի պաշտպանութիւն Ֆրանսիայի։ Բացի այս, ոչ միայն ծայրայեղ կուսակցութիւնները, այլ և Եւրոպայի բուրժուազիան և ամենքը, որոնք առաջաւոր գաղափարների տէր էին, բողոքում էին Ֆրանսիան աւերելու դէմ, նրանից երկու երկիր խլելու և այն ժամանակ չլսուած հինգ միլիարդ ֆրանկ տուգանք առնելու դէմ։ Դեռ այն ժամանակ լաւագոյն մարդիկ հասկացան, որ Գերմանիայի զինուորական յաղթանակը և Եւրոպայի կենտրոնում գերմանական զօրեղ միապետութեան առաջ գալը նշանակում է դադարացումն երկար տարիների ընթացքում այն քաղաքակրթութեան, որի ներկայացուցիչը Ֆրանսիան էր, իսկ Գերմանիայի համար նրա պետական զօրեղացումը նշանակում է հրաժարումն այդ իդէալների, որ ոգևորում էին նրա լաւագոյն մարդկանց։

Բոլորն էլ զգում էին, որ պրուսական կռուարար իւնկերութեան խրոխտանալը անխուսափելիօրէն կը տանի դէպի զինուորականութեան յաղթանակ և կը ստեղծի Եւրոպայում բռունցքի իրաւունք և կուլտուրայի ընդհանուր ստորացում։ Այս թշնամու հետ այժմ մինչև վերջին րոպէն խաղաղ զէնքով կռւում էին միլիտարիզմի բոլոր թշնամիները, մի քանիսը բողոքելով պատերազմի դէմ, իսկ միւսները ընդհանուր գործադուլի սպառնալիքով։ Բայց երբ որ զինուորական պետութեան հին հիմքերը յաղթեցին, երբոր նա, որ Չինաստան զօրքեր ուղարկելու ժամանակ բոկսերների դէմ կռուելու ինքը իրեն Ատիլլա անուանեց և հրամայեց նրանց Ատիլլայի հրոսակների նման կատաղի և անխնայ լինել, դարձաւ Գերմանիայի ղեկավարը և արտայայտիչը՝ մեր պարտքն է մեր ձեռքին եղած ուժի չափով հակահարուած տալ այդ ուժին, որովհետև այդ չար ոյժը յաղթանակեց և իւր գազանացած զինուորներին քշեց արևմտեան Եւրոպայի դէմ։

Գերմանացոց դիպլոմատները լաւ են յիշում Բիսմարկի աւանդութիւնները թէ զինուորական արշաւանքի հետ զուգընթացաբար պէտք է վարել և դիպլոմատիկ պատերազմ, այսինքն՝ ստի և խաբեբայութեան յարձակումն։ Եւ այժմ դիւանագէտները շահագործեցին էրցհերցող Ֆերդինանդի սպանութիւնը աւելի լաւ բանի չձգտող գերմանացիներին համոզելու համար, թէ Սերբիային պաշտպանելը Ռուսաստանի կողմից պատերազմի պատճառը դարձաւ։

Արևմտեան Եւրոպայի պետական մարդիկ, սակայն, շատ լաւ գիտեն, որ արդէն յուլիսի 6-ին (նոր տոմարով 19-ին) գերմանական կառավարութիւնը պատերազմ անելը վճռել էր անդառնալի կերպով։

Սերբիային առաջարկած աւստրիացոց վերջնագիրը (ուլտիմատումը) այս վճռի հետևանքն էր, բայց ոչ պատճառ։

Վերջնական վճիռը կայացել է յուլիսի 6-ին (19-ին)։

Ով չգիտէ, որ 1871 թուին Ֆրանսիայի խորտակումից յետոյ քանի-քանի անգամ Գերմանիան պատրաստւում է Ֆրանսիայի դէմ նորից պատերազմելու։ Գերմանիան միշտ պատրաստ էր նոր պատերազմի, իսկ Ֆրանսիան միշտ սպասում էր նոր արշաւանքի Գերմանիայի կողմից, որին անկարող կը լինէր դիմադրելու։ Ֆրանսիայի վերջին քառասուն տարուայ պատմութեան միջով կարմիր թելի պէս անցնում է այս վտանգի գիտակցութիւնը։ Երեք անգամ—մի անգամ Ալեքսանդր II [illegible] և երկու անգամ էլ Ալեքսանդր III օրօք—[illegible] ջամտէր Ֆրանսիայի անխուսափելի կործանման [illegible]։

Իսկ վերջին երեք տարուայ ընթ[illegible] հա-գիւ հազ չպայթեց ընդհանուր եւրոպ[illegible] պատե[illegible]։

1911 թուին պատերազմն այնքան մօտ էր [illegible] որ այստեղ Անգլիայում զինուորական նա[illegible] երկաթուղով սկսեցին Ուէլսից ուղարկել շտապով, որովհետև ծովային ճանապարհով մի քիչ երկար կը լինէր և գուցէ անապահով։ 1915 թուին Աւստրիան պահում էր զէնքի տակ մէկ միլիոն զինուոր արևելեան սահմանում, իսկ գերմանական հեծելազօրքը դեռ փետրուարին, երբոր Ռուսաստանը դեռ ծածկուած էր ձիւնով, կանգնած էր Լեհաստանի արևմտեան սահմանում՝ արշաւելու հա-

մար բոլորովին պատրաստ։ Ինձ այս փաստը պատմել են ականատեսները։ Եթէ այն ժամանակ չփռթկեց եւրոպական պատերազմը՝ պատճառն այն էր, որ Կիլի ջրանցքի ամրութիւնները դեռ պատրաստ չէին, ուր պիտի պատսպարուէր գերմանական նաւատորմիղը, իսկ այն ժամանակ դրեդնօուտները չէին կարող դեռ մտնել ջրանցքը։

Նոյնպէս պատրաստ չէր Արեւելեան Պրուսիայի լճային տեղերում ամրացած ահագին բանակը եւ նոր ամրութիւնները Կենիգսբերգում եւ Դանցիգում։ Կիլի ջրանցքի շտապեցրած աշխատանքները վերջացան 1915 թուի յունիսին եւ երկու շաբաթից յետոյ պատերազմը ծագեց։

Գ. Ենգ.

(Շարունակութիւն հետեւելով)

# Տաճկահայեր

## ԹԻՒՐՔԱԿԱՆ ՎԱՅՐԱԳՈՒԹԻՒՆՆԵՐ

Գահիրէի «Մուքաթթամ» լրագիրը հրատարակած է հետեւեալը։

«Զօրավար Նուրէտտին փաշան, որ Միջագետքի թիւրքական զօրքերի հրամանատարն էր եւ իւր ձեռքերի մէջ կենտրոնացրած էր միանգամայն քաղաքային իշխանութիւնը, սուրէ անցունել տուեր է 1,055 մարդ, որոնց մեծամասնութիւնը կը պատկանէր Պաղտատի ազատական երիտասարդութեան։ Ուրիշ դժբաղդներ ալ կախուած են կամ մեռած անօթութենէ անապատներին մէջ, ուր աքսորուած էին։

Սէզիփոնի (Տիզբոն) կռուին ժամանակ թիւրք զօրավարը հրամայեց մեռցնել իւր բանակի մէջ գտնուած արաբ վիրաւորները, եւ շատեր ողջ-ողջ թաղուեցան։

Երբ Խալիլ պէյ անցաւ Նուրէտտին փաշայի տեղը եւ գրաւեց Քութէլ Ամարա քաղաքը, կախել տուաւ 40 հոգի քաղաքի նշանաւորներէն, յարքունիս գրաւեց նրանց ինչքերը եւ իրենց կիները թողեց թիւրք զինուորների եւ սպաների ձեռքը, որոնք Կեսարիա տարին զանոնք։ Իրենց կրած անպատւութենէն յետոյ երկար չապրեցան այդ դժբաղդներ, եւ իրենց դիակներ տեսնուեցան Տիգրիսի ջուրերէն մինչեւ Ամարա քաղաքը քշուած։

Խալիլ պէյ արդէն նշանաւոր եղած էր Հայաստանի մէջ իւր կատարած վայրագութիւններով։ Բոլոր ողջանդամ մարդերը կոտրել տալէն վերջ, ջրամբարների մէջ գահավիժել տուած էր ծերերի, կիների եւ երեխաների մեծ մասը։

Իրեն հետեւորդ սպաներէ մին պատմեց, որ երբ թիւրք զօրավարը այսպէս կը նախագահէր այդ չնական գործողութեան, զոհերին մէջ տեսաւ եզական գեղեցկութեամբ մանկամարդ աղջիկ մը։

Բազմութեան մէջէն դուրս քաշելով զայն, ըսաւ.—Քու կեանքդ կը փրկեմ եւ դու իմ կինս պիտի լինիս.

Բայց նա փախաւ եւ ինքզինք նետեց ջրամբարին մէջ։

— Ա՛յ դժբաղդ, պոռաց Խալիլ պէյ, կը մեռնիս այդտեղ։

— Ի՜նչ փոյթ մեռնիլս, պատասխանեց աղջիկը. Հայաստան թո՛ղ չմեռնի։

Թիւրք դասալիք մի զինուոր տեղեկութիւն տուաւ թէ երբ ինք կը փախչէր Անատոլիի մէջէն, սարսափելի աղաղակներ լսեց ձորէ մը եւ տեսաւ 4,000-է աւելի հայեր, ամեն տարիքի այրեր եւ կիներ, շրջապատուած քիւրտ ցեղերէ, որոնք կը սպանէին, կը վերջացնէին այդ հայերը դաշոյնի հարուածներով։ Ճամբաների եւ անտառների մէջ հանդիպած էր երբեմն խեղդամահ եղած կիների, իրենց կուրծքին վրայ ունենալով տակաւին մանկիկներ, որոնք կերկարէին իրենց արիւնաթաթախ փոքրիկ ձեռքերը։

(«Արմէնիա» № 21)

# Գեղարուեստ

## ՔԱՂԱՔԻ ԵՐԳԵՐԻՑ

II

Երեկոն այս քաղաքում,
Մեղք է ու սուրբ հիացում.
—Արեւն հարբած էր այսօր,
—Արեւն էլ է մեղաւոր։
Քաղաքի այս երեկոն,
Անուշ է ու խելագար.
—Ցերե՛կ, բացուի՛ր ու ինձ տար,
—Ցերե՛կ, դու էլ ես տանջւում։
Խենթ է գիշերն այս երկրում,
Աղջիկները խենթ ու չար,
—Բարին տիրում է, մեռնում.
—Ես մեղաւո՛ր, ես անճար։
Քաղաքի այս երեկոն,
Մեղք է, երկիւղ ու ամօթ...
—Խաչելութիւն կայ այսօր.
—Խաչելութիւն իմ հոգում,
—Գիշե՛ր, քո մեղքն է խաչւում։

Գ. Շահինեան

# Մատենախօսութիւն

ARMENIA POST AND PRESENT

«Հայաստան, Անցեալը ու Ներկան», հեղ. Վ. Լ. Ուիլլիամս, 1916, Լոնդոն.

—o—

Այս գիրքը կը պատկանի, ըստ մր. Օ'Կօններրի, հայկական իրականութեան լաւատեղեակ մր. Ուիլլիամսի, «Lunday Strand»-ի նախկին խմբագրի գրչին, եւ որն հայկ. հարցի մասին հրատարակուած վերջին կարեւոր հրատարակութիւններից մին է։

Սոյն գեղեցիկ գիրքը, որ կը պարունակէ 200-է աւելի երեսներ, ամբողջովին նուիրուած է օտար ընթերցողին ծանօթացնելու հայութեան անցեալն ու ներկան։

Հատորը կսկսի մր Օկօններրի յառաջաբանով մը, կը վերջանայ հետեւեալ խօսքերով. «Ներկայ ազատագրման պատերազմը չպէտք է վերջանայ առանց հայկ. ցեղին ազատութիւն տալու... Հայաստանը կանցնի մանաւանդ դէպի յարութիւն»։

Գիրքը կը պարունակէ գլուխ մը՝ յատկացուած ծանօթացնելու՝ հայ աշխարհը աշխարհագրականօրէն, հայ ցեղի ազգագրական ուսումնասիրութիւնը եւ տնտեսականը։ Երկրորդ գլուխը՝ բովանդակում է հայ ազգի պատմական անցեալն, հայութեան թիւրք տիրապետութեան տակ ապրումներն ու կրած հալածանքները, ինչպէս նաեւ հայոց եկեղեցուն կատարած պատմական դերը, էութիւնը եւ արեւմտեան եկեղեցիներու հետ ունեցած փոխյարաբերութիւնը։ Ապա հեղինակը կանցնի հայկ. հարցին ներ-

կայ խնդրին, կը պատկերացնէ հայի առաքինութիւններն և իւր արդար պահանջները, ներկայ «ազատագրութեան պայքարէն» սպասած բարօրութիւնը և այլն։

Ուիլլիամս պատմական մասն ուսումնասիրելիս՝ օգտուած է Լինչի «Հայաստան» երկասիրութիւնից, Զօպանեանի «Հայ ժողովուրդը» ուսումնասիրութեան անգլ. թարգմանութիւնից և «Բրիտանական հանրագիտարանից»։ Իսկ ներկայ խնդիրը գրելիս, օգտուած է նոյնպէս առաջին երկու աղբիւրներից, զանազան երկիրների հանդէսներում լոյս տեսած վերջին ուսումնասիրութիւններից և այլ աղբիւրներից։ Գիրքը կը պարունակէ երկու ընդարձակ քարտէզ. կան նաև վիճակագրական տախտակներ՝ հայ ազգաբնակչութեան, մշակելի ու անմշակելի երկրամասերի տարածութեան, հայկ. կրթական հաստատութեան թուին, հայ եկեղեցիներու ու դաւանողներու վիճակագրութեան։

Հեղինակը ջանք չէ խնայած ներկայ հրատարակութիւնը լուրջ, բազմակողմանի, ամփոփ և հակիրճ դարձնելու համար։

* * *

Գրքի ամենասեղմ պարունակութիւնն է, թէ հայ ազգը ունեցած է փառաւոր անցեալ, եղած է ստեղծագործող, ընդունակ արհեստների, արուեստների, վարչական գործերի և վաճառականութեան. նա եղել է մանաւանդ լուսաւորութեան փարոսը Մերձաւոր-Արևելքում։ Անցեալին քաղաք. իրար յաջորդող փորձանքներ հայը զրկած են իրենց սեփական հարստութեննէն՝ իշխանութենէն, իսկ 13—14-րդ դարերու թրքական արշաւանքներ հայը անկման առաջնորդած. հայեր թիւրքերի տիրապետութեան տակ, հակառակ ամենավատ քաղաքական ու ընկերական պայմանների, չեն դադրած ստեղծագործող տարրը լինելուց։ Թէ հայ երկիրը ճոխ է բնական—հանքային հարստութիւններով, որոնք անծանօթ են մնացած եւրոպական հասարակութեան,—միայն գերմանացիք գիտակցած ու գերագնահատած հայկ. աշխարհի արգասաբեր հողը՝ (յարմար՝ առատ բամբակ արտադրելու) և հայկ. Բարձրաւանդակի բնական յատկութիւնը (առատ բուրդ մատակարարելու), որոնցից օգտուելու համար չեն խնայել ոչինչ։ Բացի այդ Հայաստան մտնելով գերման ազդեցութեան ներքև, համագերմաններու առաջ բաց պէտք էին լինել և՛ Պարսկաստանի, և՛ Կովկասի, վերջապէս և՛ Միջագետքի գլխաւոր ուղիները։ Այս ծրագիրը իրականանալիս գերման ճարտարարուեստը պէտք է ազատուէր «կախում ունենալ է Անգլիայից»... Ահա, այս հեռաւոր ծրագիրը դրդած է եղել Գերման-Հոններին, ասում է հեղինակը, «Հայաստանը առանց հայերու» գտնելու։ Իսկ Թիւրքիան՝ իւր ապիկարութեան, յետադիմութեան ու անշարժութեան համար, արժանի չէ տիրապետելու ընդարձակ երկիրների։ Ինչ վերաբերում է հայկ. հարցին՝ Թիւրքիան ուղղակի ու միակ պատասխանատու է կատարուած ոճիրների համար... Թրքական տիրապետութեան վերջը հասած է...կեզրակացնէ գրքի հեղինակը (եր. 98)։

«Հայերը հակառակ դժոխային պայմանների չէին դադրած ստեղծագործելէ. հայ ոգին չէ ընկճած, իսկ մեռած՝—բնաւ (երես 162)։ Հայ ժողովուրդը, զարմանալի սերնդագործող է. հայրենիքի հետ կապուած, և երբ ներկայ ահաւոր անցքերը անցնելով Հայաստանում հաստատուի բնական վիճակ—հայեր ամեն կողմերէ պիտի փութան դէպի Հայաստան, և այսպէս՝ շուտով հաստատուի թուային հաւասարակշիռը։ Թէ հայութիւնը միակ տարրն է, որ ընդունակ է ծաղկեցնելու հայ աշխարհը. նա զերծ է կրօնական մոլեռանդութիւնից, հեռու վրէժխնդրական մտայնութիւնից. նա, ստանալով մարդկային տարրական ու լիակատար իրաւունքներ, պիտի վերստանձնէ իւր պատմական դերը՝ լուսաւորութիւն սփռել ոչ միայն հայ աշխարհին՝ այլ և հարևան ժողովուրդների միջև...

Մր. Ուիլլիամսը անում է նաև մի շարք կոնկրէտ առաջարկներ դաշնակից պետութեանց՝ ապագայ հայկ. ինքնավարութեան վերաբերուող։

Գիրքը կը վերջանայ այս իմաստով.—Տէրութիւնները՝ յաջորդ սերունդները խնայելու համար նորանոր պատերազմներից, այժմէն պիտի տնօրինեն արժանաւորը ու արդարը. իսկ ներկայ պատերազմից յետոյ խաղաղութեան տևականութիւնը գերագոյն պահանջք է։—Արդարութիւնն ու իրաւունքը միայն կարող են պահպանել, տևականացնել խաղաղութիւնը, և Հայաստան կարօտ է հենց այդ արդարութեան։

Մաժակ

## ՆԱՄԱԿ ԽՄԲԱԳՐՈՒԹԵԱՆ

Խնդրում եմ հաճեցէք տպագրել իմ պատասխանը «Մշակ»-ի № 56, իմ դէմ գրած յօդուածին։ Յունուար ամսի 26-ից մինչև մարտի 20-ը շրջեցի Թուրքեստանի, Բուխարայի և Անդրկասպեան երկիրների 20 քաղաքները իբրև թեմի առաջնորդ։ Ծանօթացայ ժողովրդի դպրոցական, եկեղեցական և հասարակական կարիքներին, կարգաւորեցի ինչ որ կարելի էր, կազմեցի ապագայ գործունէութեան ծրագիրներ և հանգանակեցի յօգուտ գաղթականների Աստրախանում ստացածների հետ շուրջ 200,000 ռուբլի։

Հասնելով Բագու, ինձ ցոյց տուին «Մշակ»-ի 56 համարը, իսկ Թիֆլիսում ստացայ Հայոց Հայրապետի Դիւանից գրութիւն, որով պահանջւում է տալ բացատրութիւն։

«Մշակ» թերթը ես չեմ կարդում. երբ իմ դէմ գրութիւն է լինում, տեղեկանում եմ ուրիշներից, երբէք կարեւոր չհամարելով պատասխաններ գրել։ Իմ կարծիքը թերթի խմբագիր Հ. Առաքելեանի և նրա գրածների մասին շատ որոշ է և ես տարիներից ի վեր, դժբախտաբար, այդ կարծիքը փոխելու հիմք չեմ ունեցել։

Դիւանի պաշտօնական գրութեան պարտաւոր եմ պատասխանելու, միայն կատարում եմ հրապարակօրէն։

Գ. Առաքելեանը ուղղել է իմ դէմ մեղադրանքներ, բոլորը մահու չափ ծանր։

1) Մեսրոպ եպիսկոպոսը Թիֆլիսից հեռանալիս ոչ մի հաշիւ չտուեց իր ստացած գումարների մասին։

2) Ոչ մի թերթում Մ. եպ. չյայտարարեց ստացած դրամների մասին, որոնց գումարը հարիւր հազարների է հասնում։

Պատերազմի հետևանքով էն գլխից Թիֆլիսում կազմակերպուեցին «Հայոց Կենտրոնական Կոմիտէ», «Հ. Ազգային Բիւրօ» և 1916 թ. «Հայ կազմակերպութիւնների Միութիւն»։ Առաջին երկուսի պատւաւոր նախագահն էի, վերջինի նախագահը։ Ես ստացայ կառավարութիւնից, հայ կազմակերպութիւններից, հայ և օտար անհատներից մի քանի միլիոնի հասնող գումարներ։

Երբ ես հեռացայ Թիֆլիսից, հաշիւներ տուեցի երեք մարմիններին։ *) «Հորիզոնի» № 68-րդ հաստատում է պ. Ալ. Խատիսեանը, «Համբաւաբեր»-ի № 13՝ Հ. Կ Կոմիտէն, իսկ «Միութեան» մէջ մասնակցում էր ինքը պ. Առաքելեանը, հետևապէս քաջատեղեակ է, որ հաշիւ եմ տուել։

Բացի այդ, իմ ստացած ամեն մի գումարի մասին առաջնորդարանի քարտուղար Տ. Փիրումեանը անմիջապէս հեռախօսով տեղեկացնում էր «Հորիզոն», «Մշակ» և «Кавк. Сл.» թերթերին. երեքի մէջ էլ տպագրւում էին լուրեր։

*) Մեսրոպ եպ. Հայոց Կենտ. Կոմիտէին 3 սեպտեմբերի 1916 ամի № 812 գրութեամբ մի մանրամասն հաշիւ է տուել, որից երևում է, որ սրբազանը Կենտրոնական Կոմիտէի համար ստացել և յանձնել է 573,728 ռ. 52 կոպէկ։

Ծան. Խմբ.

Ընթերցողներին է մնում փաստերը համեմատել Առաքելեանի գրածների հետ և եզրակացութիւններ հանել։

«Մշակ»-ը շարունակում է.

3) Մ. եպ. 125,000 ռ. է փոխադրել Թիֆլիսից Աստրախան գաղթականների գումարից։

4) Մ. եպ. մի բանկից ստացել է մի գումար գաղթականների համար և ոչ ոքի չի յանձնել և

5) Մ. եպ. Եգիպտոսի Հ. Բ. Ընկ. ստացել է գումարներ անհատների յանձնելու և չի յանձնել։

Երեքն էլ անճիշտ։

Գ. Առաքելեանը հին և որոշ ձևի գրող է. Նրա համար կարևորն է ընթերցողի հոգեբանութիւնը և ոչ տրամաբանութիւնը։ Բանից երևում է, որ կան բանկեր, որ առանց հաշիւների և ստացականների դրամներ են բաշխում, կան անհատներ, որ դրամ ունին ստանալիք հիմնարկութիւնից ուղարկած մի եպիսկոպոսի անունով և այդ անձինք ստանալիք դրամը չստանալով, հրապարակ չեն գալիս, այդ տհաճ դերը մի խմբագրի թողնելով։ Իսկ պ. Առաքելեանը կարողացել է որոշ մարդկանց հոգեբանութեան վրայ ազդել. դրա ապացոյցն է, որ Դիւանից բացատրութիւն են պահանջում և Երևանցի մի հին փաստաբան, Գրիգոր Տէր-Խաչատրեան անունով, խնդրել է Կաթողիկոսից, որ Մեսրոպ եպիսկոպոսը Երևանի Կոմիտէի դատարկ դրամարկղը լցնի «Մշակի» լուրերի դրամով։

Ես Թիֆլիսից հեռացել էի 1916 թ. սեպտեմբերին. յօդուածն իմ դէմ լոյս տեսաւ մարտին, երբ յեղափոխութեան շնորհիւ իմ Աստրախանի աքսորի կապանքներն էլ էին լուծում։ Եօթ ամիս էր անցել. քանիցս առիթ կար ինձնից հաշիւ պահանջել, բայց կայսերական հրամանը ինձ անվնաս էր դարձրել. պ. Առաքելեանը հանգիստ էր։ Փոխւեցին պայմանները, հարկաւոր էր մտքեր պղտորել։ Իմ նկատմամբ նա հասել է նպատակին, ապացոյց դիւանապետի և փաստաբանի գրութիւնները։ Սակայն նա ուրիշ նպատակի էլ է հասել, մեծ [?]նարուած հասցնելով իմ սկսած գործին։ Նուիրաբերութիւնների այն ցուցակը, որ տպագրել է ինձ հետ շրջող կոնսիստորիայի անդամ Ասլանեան քահանան, մի շարք քահանաների համար լրիւ չէր, այլ պիտի շարունակւէր։ Ջարջու, Մերվ, Ասխաբադ, Ղզլարւաթ և Կրասնովոդսկ քաղաքներում։ Դրանք իմ այցելած վերջին քաղաքներն էին։ Իմ ներկայութեամբ բոլորը, և յատկապէս նւէրներից խուսափող անձինք, որոնց ես տեսնել չկարողացայ, պէտք է հրաւիրւէին ստորագրելու։ «Մշակ»-ի յօդւածը դրանց ձեռքին ոչինչ չըտալու՝ լաւագոյն զէնքն է։

Ես խնդրել էի Ասխաբադի Հայ Կանանց Բարեգործական ընկերութեան՝ Ծաղկազարդին կամ Կարմիր Կիրակի օրը միօրեայ ընդհանուր հանգանակութիւն անել իմ շրջած բոլոր քաղաքներում, օժանդակ ունենալով տեղական Հայ Կանանց Կոմիտէները։

Որքան էլ հաւատամ հայ կանանց հաստատամտութեանը, բայց, դժբաղդաբար, նրանք մի կամ միւս տեղում զգալու են «Մշակ»-ի յօդւածի տհաս տպաւորութեան հետևանքը։

Գ. Առաքելեանը գիտակցօրէն անճիշտ տեղեկութիւններ բարդելով իմ դէմ, շատ է խորամանկ, որ չիմանար, թէ դրանով վնասում է հանգանակութեան գործին։ Աշխատելով ինձ արատաւորել, նա կարծրացրեց շատերի սրտերը և օգնութիւնից զրկեց չափազանց բազմաթիւ կարօտեալների սրտերը։ Նրա նպատակը թողնում եմ ընթերցողների վճռին։

Մեսրոպ եպիսկոպոս

Թիֆլիս.

Գորի, 4 ապրիլի.—Գորու հայերի նախաձեռնութեամբ հիմնւում է «Գորու Հայկ. Կուլտուրական Միութիւն», որը նպատակ է դրել նուիրել իրեն ժողովրդի կուլտուրական հոգսերին։ Արդէն նախագիծը կազմուած է և վարչութիւն ընտրուած։ Տարեկան անդամավճարն է 3 ռ., իսկ միանուագ 100 ռ. տուողը կը համարուի Միութեան պատուաւոր անդամ։ Արդէն բաժանորդագրութիւնը բացուած է։ Առայժմ անդամագրուել են 102-ի չափ անդամ։ Առաջին հերթին բացուելու են ընթերցարան և գրադարան ու կազմակերպուելու են հանրամատչելի դասախօսութիւններ։ Վարչութիւնս խոնարհաբար խնդրում է բոլոր այն հասարակութիւններին, գրողներին, խմբագրութիւններին և անհատներին, որոնց սրտին մօտ է այս գործը, բարի լինին նիւթապէս և բարոյապէս շուտափոյթ օգնութեան հասնել այդ նորահաստատ Միութեանը, որ նա ամրապնդուի և լայնացնի իւր գործունէութիւնը։

Հասցէն՝ Гори—Арм. шкопа, Арм. Культ. Союзу.

# ՏԵՂԵԿԱՏՈՒ

Կ. Հ. Բ. Ընկ. Կարսի որբանոցի դրամական նուիրատուների ցանկը յունուար և փետրուար 1917 թ.

Տ. Վարդանուշ Ջանպոլադեան 25 ռ., պ. Վահան Վարդերեսեան 10 ռ., Ցոլակ Գոթանճեան 3 ռ., տ. Աննա Գազանճեան 25 ռ., Տէր Խորէն Ստամպոլցեան 10 ռ., Սարաղամիշի մօտ Ալի Սոֆիա գիւղին մէջ հացկերոյթի առթիւ հաւաքուած հայ դրամաօպերետա խմբէն 80 ռ., տ. Արաքսի Պապովեան 100 ռ., տ. Պուպուեան 50 ռ., պ. Յովհաննէս Խասապեան 30 ռ., պ. Յակոբ Անդրէասեանի տօնին հաւաքուած 50 ռ. 50 կ., խումբ մը երիտասարդներէ պ. Մութաֆեանի ձեռօք 40 ռ. 50 կ., տ. Հեղինէ Աւան-Իւզբաշեան 10 ռ., եղբարք Բալանճեանց տան մէջ հաւաքուած տօնի առթիւ 150 ռ., պ. Քերովբէ Գոնտաքճեան 10 ռ., եղբարք Տէր-Մինասեանք 50 ռ., պ. Խաչատուր Ատոյեան 100 ռ., պ. Սէրգէյ Յարութիւնեան 25 ռ., պ. Գարեգին Երզնեաց 100 ռ., եղբարք Աւետիսեանք 160 ռ., պ. Մելքոն Տէր-Մելքոնեանի նշանդրէքին հաւաքուած 50 ռ., Միւճեան Սարգսի տօնախմբութեան հաւաքուած 50 ռ., օր. Ստեփանեանի նշանդրէքի հանդէսին հաւաքուած 102 ռ. 50 կ., պ. Յարութ Պոտալեանի եղբօր հարսանեաց հանդէսին հաւաքուած 82 ռ. 65 կ., պ. Յարութիւն Խանչալեանի հարսանիքին մասնակցողներէն 151 ռ., կապիտան պ. Ենկեւիչ 20 ռ., պ. Արշակ Պղտոնեանցի հարսանիքին հաւաքուած 43 ռ., պ. Վարդան Խաչատրեանի հարսանիքին հաւաքուած 75 ռ., պ. Եօրկի Պապալով 5 ռ., պ. Յովհաննէս Պաթոյեան 10 ռ., բժ. Բաղդասար Բաղդասարեան 100 ռ.։ Գումարը 1,718 ռ. 15 կ.։

# ՊՈՍՏ-ԱՐԿՂ

Ախալցխա.—Տիկին Ա. Տէր-Անանիկեանին.—«Համբաւաբերի» համարները կանոնաւոր ուղարկւում են Ձեզ № 1251 տպագրուած հասցէով. եթէ չէք ստանում՝ ստուգեցէք տեղիդ պոստատանը։

Ալէքսանդրապոլ.—Գ. Յ. Մարգարեանին—Ձեզ անխափան ուղարկւում է «Համբաւաբերը» Ձեր ցոյց տուած ցպահանջ հասցէով։ Ստուգեցէք տեղիդ պոստատանը՝ Տպագրուած հասցէի № 862։

Խմբագիր՝ ՍԱՄՍՈՆ ՅԱՐՈՒԹԻՒՆԵԱՆՑ

Հրատարակիչ Կ. Հ. Բ. ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ

# Յայտարարութիւններ

## ԹԻՒՐՔԱՀԱՅ ՓԱԽՍՏԱԿԱՆՆԵՐՈՒ ՀԱՄԱԳՈՒՄԱՐ

*Առաջիկայ մայիսի 1-ին Երևանի մէջ պիտի գումարուի թիւրքահայ փախստականներու Համագումարը, որ տևելու է 3—5 օր։*

*Համագումարի օրակարգն է.*

*1.—Զեկուցումներ։*

I) *Համագումարին մասնակցող միութեանց և մարմիններու գործունէութեան մասին։*

II) *Ընդհանուր փախստականներու օգնութեան գործին մասին։*

III) *Օտար, արտասահմանեան հայ և հայանպաստ մարմիններու հետ յարաբերելու մասին։*

*2. Ներգաղթ և անոր հետ կապուած խնդիրներ։*

*3. Երկրի մէջ տեղ. ազգ. վարչութեանց կազմակերպում և իրաւաբանական օգնութիւն։*

*4. Զգրաւուած վայրերու հայ գերիներու ազատութեան և օգնութեան գործը։*

*5. Երկրի հայ ազգաբնակութեան ապահովութեան հարցը։*

*6. Թիւրքահայ փախստականներու տնտեսութեանց վերականգնումը։*

I) *Վարուցանքս (պետական և ազգ. միջոցներով)։*

II) *Արհեստանոցներու, փոխադարձ օգնութեան և կոօպերատիւներու կազմութիւն։*

III) *Փոխատուութեան խնդիրը։*

IV) *Թիւրքահայ վերաշինութեան ֆոնդի խնդիրը։*

*7. Նպաստի և պարենաւորման գործը։*

*8. Փախստականներու մասնակցութիւնը Կովկասի հայոց*

*9. Թիւրքահայ գերինեը Ռուսաստանի մէջ։ գիւղատնտեսական աշխատանքներուն։*

*10. Փախստականներու առողջապահութեան գործը (հիւանդանոցներ, բժշկական օգնութիւն, և այլն)։*

*11. Որբանոցներ, որբեր և անոնց կրթութիւնը։*

*12. Դպրոցներ ու անոնց կազմակերպումը։*

*13. Աշխատանքի և տեղեկատու բիւրոներ ու փախստական վիճակագրութիւն։*

*14. Նոր առաջարկներ ապագայ գործունէութեան համար։*

*15. Թիւրքահայ փախստականներու ներքին կազմակերպութիւն և կանոնադրութեան հաստատումը։*

*16. Թիւրքահայ կեդրոնական վարչութեան ընտրութիւնը։ Թիւրքահայ Համագումարը կազմակերպող մարմնի կողմից՝*

*Անդրանիկ, Արամ, Ա. Դարբինեան*

*Հասցէ՝ (մինչև ապրիլի 24)* Тифлисъ, Головинск. пр. № 41, ред. „Ван-Тоспъ“. *Յանձնելի Թիւրքահայ Համագումար կազմակերպող մարմնին։ (Ապրիլի 24-ից յետոյ մինչև Համագումարի փակումը)* Эривань, редакція „Ашхатанкъ“. *Յանձնել Համագումարի Կարգադիր Մարմնին։*



*Տպարան Ն. Աղանեանի* Тип. Н. Аганьянца, Полицейская 7.